Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք.

ՀԿ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒԼՏ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2

ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ 1936 ՅԵՐԵՎԱՆ

Պրոլետարներ բոլոր յերկիրների, միացե՛ք։

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2



ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● ՅԵՐԵՎԱՆ ● 1936

Պատ. խմբագիր՝ Գ. Շաղգամյան
Տեխ. խմբ.՝ Ս. Խաչատրյան
Սրբագրիչներ՝ Հ. Դոլուխանյան, Հ. Մանուկյան

Գլավլիտի լիազոր № 1096—А, Հրատ. № 403,
Պատվեր 1296 Տիրաժ 5000 П—84
Ինդեքս РК

Հանձնված է արտադրության 29/X 1936 թ.
Ստորագրված է տպագրելու 2/XI 1936 թ.

Պետհրատի տպարան, Երևան, II Գնունի, № 4

# ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ

## ԻՆՉՈՒ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՉՎՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ

*Մոտենում է մեծ պրոլետարական Հոկտեմբերյան հեղափոխության 19-րդ տարեդարձը: Խորհրդային երկիրը հանրագումարի յե բերում պրոլետարական դիկտատուրայի տասնիննամյա հերոսական պայքարը նոր, սոցիալիստական հասարակություն կառուցելու համար: Այդ հանրագումարը փայլուն կերպով արտացոլված է նոր ստալինյան Սահմանադրության նախագծում:*

*Ամբողջ խորհրդային ժողովրդի կողմից լայն քննարկվող նոր ստալինյան Սահմա-*

նադրության նախագծի հրապարակումը մեծ պատմական նշանակություն ունեցող մի դեպք է։ Նոր Սահմանադրության նախագծում գրի յեն առնված բանվոր դասակարգի համաշխարհային նվաճումները սոցիալիզմի առաջին յերկրում։ Այդ նվաճումներն անդարձ պատմական դատավճիռ են բերում կապիտալիզմին, ֆաշիստական դիկտատուրային, մերկացնում են նրանց մինչև վերջը։ Յեվ այդ բնական է։ Նոր Սահմանադրությունը սոցիալիզմի համար մղվող պայքարի արդյունքն է։ Նա բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության Սահմանադրությունն է։

Մեր պետությունը հենց իր գոյության սկզբից կոչվել է սոցիալիստական պետություն։ Բայց այն ժամանակ այդ կոչումն արտահայտել է միայն սոցիալիզմ կառուցելու ձգտում, կամք։

«Սոցիալիստական խորհրդային հանրապետություն» արտահայտությունն — ասում եր Լենինը — նշանակում է խորհրդային իշխանության վճռականությունը՝ իրականացնելու անցումը դեպի սոցիալիզմ



և վոչ յերբեք տվյալ տնտեսական կարգերը սոցիալիստական ճանաչելը»*)։

«Բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն» — այս արտահայտությանն արդեն հանդիպում ենք ՌՍՖԽՀ այն սահմանադրության մեջ, վոր հաստատել եր Խորհուրդների XII համառուսաստանյան համագումարը 1925 թվի մայիս ամսին։ Այստեղ հստակ կերպով գրի յե առնված, վոր «Ռուսաստանի Հանրապետությունը բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն է, վորը կառուցված է ազգային խորհրդային հանրապետությունների ֆեդերացիայի հիման վրա»։

Բանվոր դասակարգն աշխատավոր գյուղացիության հետ միասին այն ժամանակ Սահմանադրության մեջ գրի առավ այն մեծ նպատակը, վոր նա իր առաջ դրել եր, այն է՝ բուրժուազիայի դիկտատուրության ճնշումը, մարդու կողմից մարդու

*) Լենին, հատոր XXVI, եջ 33

չահագործման վոչնչացումը, սոցիալիզմի հաստատումը:

Մեր առաջին Սահմանադրությունն ընդունելու և նոր ստալինյան Սահմանադրության նախագծի միջև ընկած ժամանակամիջոցում գտնվում է սոցիալիզմի շինարարության ասպարեզում կուսակցության և խորհրդային իշխանության կատարած հսկայական ստեղծագործ աշխատանքի ժամանակաշրջանը:

«Պատերազմից ժառանգած ավերված դաշտեր, կանգ առած գործարաններ, քայքայված արտադրողական ուժեր և ուժասպառ յեղած տնտեսական ռեսուրսներ» — ահա այն տնտեսական պայմանները, վոր մենք ունեյինք առաջին Սահմանադրությունն ընդունելու մոմենտին, ինչպես այդ վորոշում է խորհրդային սոցիալիստական հանրապետությունների կազմակերպման մասին յեղած դեկլարացիան: Յերկրի եկոնոմիկան իր մեջ պարունակում եր Լենինի մատնանշած բոլոր հինգ կացութաձևերը՝



նահապետական տնտեսություն, մանրապրանքային տնտեսություն, մասնավոր կապիտալիզմ, պետական կապիտալիզմ և սոցիալիզմ: Չուգունի արտադրանքը կազմում եր նախապատերազմյան մակարդակի միայն 17 %-ը, շոգեքարշերի արտադրությունը՝ 29 %-ը, քարածխի հանույթը՝ 59,3 %-ը: Մասնավոր արդյունաբերությունը բաց եր թողնում արդյունաբերության ամբողջ արտադրանքի համարյա մի քառորդը (23,7 %-ը): Յերկրի ապրանքաշրջանառության կեսից ավելին գտնվում եր մասնավորների ձեռքին: Գյուղում գոյություն ուներ մանր տնտեսությունների ովկիանոս: Դեռ 1926/27 թվականներին խորհտնտեսություններն ու կոլտնտեսությունները տալիս եյին յերկրում արտադրվող հացի միայն 1,7 %-ը: Կուլակությունն աչքի ընկնող դեր եր խաղում իբրև գյուղատնտեսական մթերքների արտադրող: Իրեն զգալ եր տալիս գործազրկությունը:

*Սոցիալիզմը հենվում էր պրոլետարական պետությանը պատկանող իշխող բարձունքների՝ պետական արդյունաբերության, յերկաթուղային և ջրային տրանսպորտի, բանկերի, պետական և կոոպերատիվ առևտրի, արտաքին առևտրի մենաշնորհի վրա և այլն: Սակայն բազմակացութաձև էկոնոմիկան միասնական, միաձույլ սոցիալիստական մասսիվի փոխակերպելու համար, յերկիրը դարավոր աղքատությունից և հետամնացությունից դուրս կորզելու համար պետք էր հսկայական քայլերով առաջ մղել սոցիալիզմի արտադրողական ուժերի ստեղծումն ու բազմապատկումը, պետք էր ագրարային յերկիրը փոխադրել արդի ինդուստրիայի ռելսերի վրա, պետք էր հետամնաց մանր գյուղատնտեսության յերկիրը փոխադրել խոշոր սոցիալիստական յերկրագործության ռելսերի վրա, պետք էր արմատախիլ անել շահագործումը:* Ստալինյան հանճարը ԽՍՀՄ-ը դուրս բերեց դեպի սոցիա-



լիզմի՝ առաջավոր, հզոր ինդուստրիալ պետության և սոցիալիստական խոշոր գյուղատնտեսության լայն ճանապարհը: *Թո՛ղ ֆաշիստները թունավոր զրպարտության ծովեր ժայթքեն, թող կատաղի լորձունք արտադրեն տրոցկիստական - զինովյևյան հակահեղափոխական, սպիտակ գվարդիական թափթփուկները: Կուսակցությունն ընկեր* Ստալինի *ղեկավարությամբ մերկացրեց դասակարգային թշնամիների բոլոր մեքենայությունները: Դաժան դասակարգային պայքարի պայմաններում* սոցիալիզմը մեր յերկրում կառուցվել է:

*Այսօրվա իրականությունը բնութագրվում է նրանով, վոր* «ԽՍՀՄ-ի տնտեսական հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, վորոնք հաստատվել են տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացիայի, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփակա-

նության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը վոչնչացնելու հետևանքով» (*Սահմանադրության նախագծի I գլխի 4 հոդվածը*): *Հողը, նրա ընդերքը, ջրերը, անտառները, գործարանները, ֆաբրիկաները, հանքահորերը, հանքերը, յերկաթուղային, ջրային ու օդային տրանսպորտը, բանկերը, կապի միջոցները, պետության կազմակերպած խոշոր գյուղատնտեսական ձեռնարկությունները (խորհտնտեսություններ, մեքենա — տրակտորային կայաններ և այլն), հիմնական բնակարանային ֆոնդը քաղաքներում ու արդյունաբերական կենտրոնում հանդիսանում են պետական սեփականություն, այսինքն՝ համաժողովրդական ունեցվածք:*

*Կոլտնտեսությունների ու կոոպերատիվ ձեռնարկությունների կենդանի ու մեռյալ ինվենտարը, նրանց հանրային շենքերը, ինչպես և կոլտնտեսություններում և կոոպերատիվ ձեռնարկություններում արտադրվող պրոդուկցիան, կազմում են նրանց*



*հանրային, սոցիալիստական սեփականություն: Կոլտնտեսությունների զբաղեցրած հողն ամրացված է նրանց առհավետ: ԽՍՀՄ-ի ամբողջ տնտեսական կյանքը, հակառակ կապիտալիստական անարխիայի և կատաղի մրցության, «վորոշում և նրան ուղղություն է տալիս պետական ժողովրդատնտեսական պլանը՝ հօգուտ հանրային հարստության ավելացման, աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման, ԽՍՀՄ-ի անկախության ամրացման և նրա պաշտպանունակության ուժեղացման» (հոդված* 11):

*Տասներկու տարի յե մեզ բաժանում առաջին Սահմանադրությունն ընդունելուց: Բայց ի՜նչպիսի պատմական ուղի յե անցած: Սոցիալիզմն ամենուրեք հաղթել է — քաղաքում, գյուղում, արդյունաբերության մեջ և տրանսպորտում, ֆինանսական տնտեսության և ապրանքաշրջանառության մեջ: Սոցիալիզմի տեսակարար*

կշիռը յերկրի ամբողջ ժողովրդական յեկամտի մեջ 1935 թ. կազմում եր 97,8 տոկոս: Սոցիալիստական արդյունաբերության բաժինը յերկրի ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ այժմ կազմում է 99,6% և սոցիալիստական յերկրագործության բաժինը գյուղատնտեսության հացահատիկային արտադրանքի մեջ՝ 95,5%: Այս տարի մեր ամբողջ գյուղատնտեսությունը տալիս է 6,380 միլիոն փութ հացահատիկային կուլտուրա. այդ քանակից 5,390 միլիոն փութ տալիս են կոլտնտեսությունները, 700 միլիոն փութ՝ խորհտնտեսությունները և միայն 290 միլիոն փութ՝ մենատնտեսները: 1925 թվին բոլոր արտադրական ֆոնդերի միայն 48,8 %-ն եր գտնվում սոցիալիզմի ձեռքում, 1936 թըվին ավելի քան 97 %-ը: Արդյունաբերության արտադրանքը 1936 թվին 42 անգամ ավելի կլինի, քան 1921 թվին: Արդյունաբերության մինչպատերազմյան մակարդակից, վորի կեսին ել չեյինք հասել մենք



1924 թվին, այժմ շատ առաջ ենք անցել և այս տարի այն 8 անգամ կգերազանցվի: Այս տարվա արտադրանքի աճը միայն ավելի քան մեկ ու կես անգամ գերազանցում է 1913 թվի ամբողջ արտադրանքը: 12 տարվա ընթացքում — 1924-ից մինչև 1936 թիվը — արդյունաբերության արտադրանքը աճել է 17 անգամ, ընդ վորում ամբողջ արտադրանքի 73,5 %-ը մենք ստանում ենք նոր և նորոգված գործարաններից, վորոնք կառուցված և վերակառուցված են հնգամյակների տարիներում:

Թե վորքան մեր յերկիրն առաջավոր, ինդուստրիալ է դարձել, վկայում են հետևյալ տվյալները. — 1913 թվին արդյունաբերությունը տալիս եր յերկրի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի 40 %-ը, իսկ գյուղատնտեսությունը՝ 60 %-ը: 1936 թվին չնայած գյուղատնտեսության մեծ աճին՝ արդյունաբերության բաժինը հասնում է 80 %-ի: Սոցիալիստական դաշտերում աշխատում է այժմ

ավելի քան 400 հազար տրակտոր: Իսկ չէ՞ վոր շատ չի անցել այն որից, յերբ մենք ստիպված եյինք տրակտորներ ներմուծել արտասահմանից: Միայն տրակտորներ ներմուծելու վրա 1921—1931 թվականների ընթացքում պետությունը ծախսել է մոտ 200 միլլիոն վոսկի ռուբլի: Յեթե մենք ստիպված լինեյինք տրակտորների ներմուծումը շարունակել, որինակ, 1934 թվին, ապա ծախքը ծածկելու համար պետք կլիներ արտասահմանում վաճառել մոտ 500 միլլիոն փութ հաց:

Մեր յերկիրը արընթաց կերպով գնում է դեպի յերկրորդ հնգամյակի կարևորագույն խնդիրներից մեկի կենսագործումը — դեպի ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման ավարտումը: Մենք արդեն մոռացել ենք գործազրկության սարսափները: Մեծ ստախանովյան շարժման ծավալումը հիմք է տալիս կարծելու, վոր հեռու չե այն ժամանակը, յերբ մենք կհաղթենք



կապիտալիզմը վերջին փրոնտում և կըստեղծենք աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն, քան կապիտալիզմը:

Յերկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման հիման վրա չըտեսնված չափով բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը:

ԽՍՀՄ-ը դարձել է սոցիալիստական սեփականության, հզոր, ինդուստրիալ, կոլտնտեսական յերկիր, աճող առատության և ունևորության յերկիր:

Ակնհայտորեն պարզ է, վոր «հասարակական այն կազմակերպությունը, վոր ստեղծել ենք մենք, կարելի յե անվանել խորհրդային, սոցիալիստական, դեռ լրիվին չավարտված կազմակերպություն, բայց իր հիմքով սոցիալիստական կազմակերպություն...*):

Մեր հասարակական սիստեմում տեղ չկա այլևս շահագործող դասակարգերի համար:

---

*) Ստալին, Զրույց Ռոյ Հովարդի հետ, եջ, 12, Կուսհրատ, 1936 թ.:

Բանվոր դասակարգը մեր երկրում իշխանության գլուխ է կանգնած, ղեկավարում է ամբողջ պետական և տնտեսական կյանքը:

Նոր խորհրդային գյուղացիությունը, կոլտնտեսությունների մեջ միացած, բանվորների հետ սոցիալիզմ է կառուցում: Ինտելիգենցիան նույնպես մեր հասարակության, մեր ժողովրդի իրավահավասար մասն է դարձել, բանվորների ու գյուղացիների հետ միասին աշխատելով սոցիալիզմի շինարարության վրա:

Դասակարգերի միջև եղած սահմանները ջնջվում են: «Մեր հասարակությունը բացառապես կազմված է քաղաքի և գյուղի ազատ աշխատավորներից — բանվորներից, գյուղացիներից, ինտելիգենցիայից» (ՍՏԱԼԻՆ):

Արմատական այս բոլոր փոփոխությունները արտացոլում է նոր Սահմանադրության նախագիծը, վորը հրապարակվել է համաժողովրդական քննարկման համար:



## ԻՆՉՈ՞Ւ ՄԵՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է

Լենինն ու Ստալինը պրոլետարիատի դիկտատուրայի մեջ տեսնում եյին ամենից առաջ բանվոր դասակարգի և գյուղացիության աշխատավոր մասսաների դասակարգային դաշինքի մի հատուկ ձև, ընդ վորում ապահովվում է բանվոր դասակարգի ղեկավար դերն այդ դաշինքի ներսում և բանվոր դասակարգի դիրքերի ուժեղացումը դասակարգերն ու դասակարգային հասարակությունն առհասարակ վոչնչացնելու համար:

Բանվոր դասակարգի և գյուղացիության աշխատավոր մասսաների միությունը զոդված է բանվորների ու գյուղացիների զավակների արյունով Հոկտեմբերյան օրերին, մեր երկրի վրա գրոհող գիշատիչների դեմ մղած քաղաքացիական պատերազմի տարիներին:

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտը, թշնամիներին բացահայտ կռվում ջախջախելը թույլ տվին բոլշևիկյան կուսակցության կողմից ղեկավարվող պրոլետարիատին անցնել անտեսական շինարարության, սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի կառուցմանը, սոցիալիզմի հոյակապ շենքի կերտմանը: Պրոլետարիատն իր դաշնակցին վերադաստիարակում է, օգնում է նրան հաղթահարելու մանր-ապրանքային արտադրության հետ կապված հնկա ուժ ունեցող սովորությունները և անշարժությունը:

Բանվոր դասակարգն ստեղծելով առաջնակարգ սոցիալիստական արդյունաբերություն, գյուղ ուղարկելով հարյուր հազարավոր տրակտորներ, տասնյակ հազարավոր կոմբայններ և ավտոմոբիլներ, միլիարդ ռուբլիների գյուղատնտեսական գործիքներ, օգնեց գյուղացիության աշխատավոր մասսաներին վառք կոխել կոլտնտեսությունների ուղին, սոցիալիզմի ուղին: Կուսակցությունը



ջախջախվեց իբրև դասակարգ համատարած կոլեկտիվացման բազայի վրա:

Երբ ուշադրությամբ կարդում ես գյուղատնտեսության լավագույն մարդկանց՝ տրակտորիստների, կոմբայնավարների, կթողների, հովիվների, ճակնդեղի դաշտերի հինգհարյուրականների, հացահատիկային կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների առաջավորների ճառերը կուսակցության և կառավարության ղեկավարների հետ ունեցած խորհրդակցությանը, ակնառու կերպով զգում ես, թե վորքան է փոխվել կոլտնտեսական գյուղի դեմքը, թե ինչպես փոխվել են մարդիկ:

Կոլտնտեսական գյուղացիությունը, — ինչպես ասում էր Միխայիլ Իվանովիչ Կալինինը ստալինյան Սահմանադրության նախագծի մասին նորերս արտասանած իր ճառերում, — «բանվոր դասակարգի դաշնակցից կալվածատերերի ու կապիտալիստների դեմ մղվող կռվում այժմ վերածվել է նրա յեղբայրակցի՝ սոցիալիստական շինա-

բարության մեջ»: *Հակառակը, ճնշող թըվով գյուղացիություն (գյուղացիական տընտեսությունների մոտ 90 %-ը), կազմակերպվելով կոլտնտեսությունների մեջ և այնտեղ ազնիվ կերպով աշխատելով, դարձել են սոցիալիզմի կառուցողներ:*

*Բանվորների ու գյուղացիների դաշինքը հիանալի արդյունքներ է տվել: Այդ արդյունքներն զգում է մեր սոցիալիստական հասարակության ամեն մի ազատ աշխատավոր: Բանվորների ու գյուղացիների դաշինքը—սոցիալիստական պետության անդրդվելի հիմքը — եղել և մնում է սրբազան, անդրդվելի պատվիրան: Այդ դաշինքն անխախտելի է:*

*ԽՍՀՄ-ի Սահմանադրության նախագծի 1 հոդվածը, որն ասում է. «Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն է» այն փաստըն է արտացոլում, որ* Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը ծնվել,



ամրացել, աճել և առնացել է բանվորների և աշխատավոր գյուղացիների սերտ մարտական դաշինքի հետևանքով: *Հեղափոխության հիմնական ուժերը, որոնք պայքարել, նվաճել ու ամրապնդել են սոցիալիզմն աշխարհիս մեկ վեցերորդ մասում, հանդիսանում են ֆաբրիկաների, գործարանների, ածխահորերի, երկաթուղային և ջրային ճանապարհների աշխատավորները, դաշտերի աշխատավորները:*

*Սահմանադրության նախագծի 1 հոդվածում տրվում է* մեր պետության բնույթի սոցիալական բնութագիրը, նրա դասակարգային էության բնութագիրը: Այդ հոդվածում ընդգծվում է բանվորների և աշխատավորների դաշինքի անխախտելիությունը, դաշինք, որը հանդիսանում է բանվոր դասակարգի դիկտատուրայի գերագույն սկզբունքը:

*Սակայն Սահմանադրության նախագիծը միայն դրա մա՛սին չէ, որ հենց սկզբից խոսում է: Մեր պետությունը որպես բան-*

վորների ու գյուղացիների պետություն բնորոշելը խոսում է այն մասին, վոր դեռ վոչ բոլոր խնդիրներն են լուծված, վոր դեռ կան դասակարգային տարբերության մնացորդներ, վոր դեռ չեն ջնջվել դասակարգերի միջև յեղած սահմանները: Դրա հետ կապված է մեր հասարակարգի հիմքում դրված սոցիալիստական սեփականության յերկու ձևերի տարբերությունը՝ պետական սեփականություն — համաժողովրդական ունեցվածքի և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականություն — առանձին կոլտնտեսությունների, կոոպերատիվ միավորումների սեփականություն:

Գյուղացի — կոլտնտեսականներն աշխատում են հողի վրա, վորը համաժողովրդական սեփականություն է, կոլտնտեսություններն սպասարկվում են պետական մեքենատրակտորային կայաններով, բայց այն ժամանակ, յերբ ձեռնարկություններում և խորհտնտեսություններում համաժո-



ղովրդական սեփականության լիակատար տերն ու տնօրենը սոցիալիստական պետությունն է, կոլտնտեսականներն իրենք են կարգադրում իրենց արտադրության միջոցները գյուղատնտեսական արտելի կանոնադրության հիման վրա: Այն ժամանակ, յերբ բանվորը յեկամտի մեջ իր բաժինն է ստանում աշխատավարձի ձևով համաժողովրդական ֆոնդից, վորը վորոշում է պետությունը ժողովրդատնտեսական պլանի մեջ, կոլտնտեսականն իր յեկամուտն ստանում է անմիջապես իր կոլտնտեսության յեկամտից: Վերջապես չի կարելի մոռանալ նաև այն հանգամանքը, վոր կոլտնտեսականներն առևտուր են անում, տնամերձ հողամաս, կով, թռչուն և այլն ունեն: Այս բոլոր տարբերությունները արմատական չեն, բայց այդ տարբերությունները հաշվից դուրս գցել չի կարելի: Գյուղի աշխատավորների սոցիալիստական վերափոխումը դեռ ավարտված չէ, գյուղի և քաղաքի միջև յեղած տարբերությունը դեռ հաղթահարված չէ: Կոլտնտեսական-

ները դեռ շատ մասնատիրական մնացորդներ, տրադիցիաներ ունեն:

«Բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն» արտահայտությունը բնորոշելով մեր պետության սոցիալական էությունը, ցույց է տալիս դասակարգերի վերացման պրոցեսի ավարտված չլինելը և կոչ է անում աշխատելու դասակարգային տարբերությունների բոլոր մնացորդների վերացման վրա, դասակարգերի միջև յեղած սահմանները վերջնականապես ջնջելու վրա:

Նոր սահմանադրությունը, վորի ստեղծողն ու վոգեշնչողը հանդիսանում է մեծ Ստալինը, սոցիալիստական հասարակության առանձին խավերի միջև յեղած տարբերությունները լրիվին վոչնչացնելու լայն հեռանկար է բաց անում, բայց 1 հոդվածն ուժգին կերպով ընդգծում է, վոր այժմ դեռ պահպանվել են դասակարգային տարբերությունների մնացորդները, վոր բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղա-



ցիության մեծ դաշինքը բանվոր դասակարգի դիկտատուրայի անխախտելի հիմքն է հանդիսանում:

## ԻՆՉՈՒ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ՄԵՋ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ ԿՈՉՎՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ

Մեր հայր և ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի սրատես աչքը 1905 թվին Պետերբուրգի, Մոսկվայի և Իվանովի բանվորների գործադուլային պայքարում ծնված խորհուրդների մեջ նկատեց հաղթանակած պրոլետարիատի պետական իշխանության ապագա ձևը:

«Ամբողջ իշխանությունը խորհուրդներին» լոզունգի տակ բանվորներն ու զինվորները գնում եյին դեպի Հոկտեմբերյան ապստամբություն ընդդեմ Կերենսկու ժամանակավոր կառավարության, վորը կապիտալիստների ու կալվածատերերի դրածոն եր: 1917

թվի հոկտեմբերյան օրերին գումարված Խորհուրդների II Համառուսաստանյան համագումարի առաջին ակտը եղավ իշխանության անցումը բանվորական, գյուղացիական և զինվորական պատգամավորների խորհուրդներին հռչակելը: Աշխատավոր ու շահագործվող ժողովուրդի իրավունքների դեկլարացիան, որը գրել էր Լենինը, հենց առաջին տողից հռչակեց՝ «Ռուսաստանը հայտարարվում է բանվորական, զինվորական ու գյուղացիական պատգամավորների խորհուրդների հանրապետություն: Կենտրոնում և տեղերում ամբողջ իշխանությունը պատկանում է այդ խորհուրդներին»*):

Բանվորական, գյուղացիական և կարմիրբանակային պատգամավորների խորհուրդներ — ահա սահմանված, սովորական, հանրածանոթ, ամեն մի աշխատավորի կենցաղի ու գիտակցության մեջ մտած մեր

*) Լենին, հատոր XXVII, էջ 174.



գեղեցիկ հայրենիքի իշխանության օրգանների կոչումը:

Ստալինյան Սահմանադրության նախագիծն առաջարկում է խորհուրդների անունը փոխել: «Ամբողջ իշխանությունը ԽՍՀՄ-ում պատկանում է քաղաքի ու գյուղի աշխատավորներին՝ հանձինս աշխատավորների պատգամավորների խորհուրդների», այսպես հստակ, պարզ ու համառոտ կերպով տված է Սահմանադրության նախագծի յերրորդ հոդվածում:

Այս նոր պարզ խոսքերն արտացոլում են այն խոր փոփոխությունները, վորոնք տեղի յեն ունեցել պրոլետարական դիկտատուրայի յերկրում Ստալինի դարաշրջանում:

Տասնհինգ տարի առաջ Վլադիմիր Իլյիչ Լենինը, աչք ման ածելով Ռուսաստանի հսկայական տարածությունների վրա Վոլոգդայից հյուսիս, Ռոստով-Դոնից և Սարատովից հարավ-արևելք, Օրենբուրգից և Օմսկից հարավ, Տոմսկից հյուսիս, ասում

էր՝ «Այս բոլոր տարածությունների վրա նահապետականությունը, կիսավայրենությունն ու ամենաիսկական վայրենությունն է թագավորում: Իսկ մնացած ամբողջ Ռուսաստանի գյուղացիական խուլ անկյուններո՞ւմ... Միթե այս բոլոր վայրերում չե՞ն իշխում նմանապես նահապետականությունը, օբլոմովականությունը, կիսավայրենությունը»*): Ինչ հեքյաթային փոփոխություն է կրել մեր սիրելի յերկիրն այս տասնըհինգ տարվա ընթացքում: Բևեռային շրջանի այն կողմը և Կովկասյան լեռնաշղթայի այն կողմը, արևմուտքում և արևելքում աճել են նոր քաղաքներ և բանվորական նոր ավաններ: 245 հազար կոլեկտիվ տնտեսություններ, վորոնք փոխարինել են անդրջըրհեղեղյան տեխնիկայի — մանգաղի, կալսիչ շղթայի, արորի ու գերանդու վրա հենվող մանր անհատական գյուղացիական տնտեսությունների ովկիանոսը, պատմության

*) Լենին, հատոր XXVI, եջ 8



կեղտաջրի փոսն են ուղարկում նահապետականությունը, օբլոմովականությունը, կիսավայրենությունը: Այժմյան՝ մեջքը հըպարտ կերպով ուղղած, գլուխը բարձր բռնած կոլտնտեսականն արդեն այն խղճուկ, խավար գեղջուկը չէ: Ընդմիշտ չքացել են դասակարգային շերտավորման, աղքատության դարավոր տառապանքներն ու տանջանքները:

Մեզնից հեռանալիս Լենինը կտակեց նեպական Ռուսաստանը դարձնել սոցիալիստական: Մեծ Ստալինի ղեկավարած կուսակցությունը կենսագործեց լենինյան այդ կտակը: Խորհուրդների անվան փոփոխությունը ցույց է տալիս, թե ինչպես է փոխվել յերկրի ամբողջ եկոնոմիկան, ինչպես են փոխվել մարդկանց միջև յեղած հարաբերությունները, ինչպես են փոխվել մարդիկ: Մեր յերկրում աշխարհիս տիրակալը աշխատանքն է: Յեվ այդ մասին են պատմում ամբողջ աշխարհի աշխատավորներին Սահմանադրության այն հոդվածները, վո-

րանք խոսում են աշխատավորների պատգամավորների խորհուրդների մասին։

Յերբ Սահմանադրության նախագիծը խոսում ե աշխատավորների պատգամավորների խորհուրդների մասին, ապա հենց դրանով իսկ Սահմանադրության մեջ գրի յե առնվում այն պարզ և ամենքին ակներև փաստը, թե «մեր հասարակությունը բացառապես կազմված ե քաղաքի և գյուղի ազատ աշխատավորներից — բանվորներից, գյուղացիներից, ինտելիգենցիայից»*)։ Աշխատավորների պատգամավորների խորհուրդնե՛ր։ Այս պարզ ու հասկանալի խոսքերն իրենց մեջ ներծծել են բոլշևիկների կուսակցության և խորհուրդների հսկայական աշխատանքի արդյունքը՝ շահագործող դասակարգերի վերացման, իրեն իսկ բանվոր դասակարգին փոխելու, պրոլետարիատի դաշնակից գյուղացիությանը վերափոխելու և նոր, խորհրդային, իսկական աշ-

*) Ստալին, Զրույց Ռոյ Հովարդի հետ, եջ 14. Կուսհրատ, 1936 թ.։



խատավոր ինտելիգենցիա ստեղծելու ասպարեզում։ Խորհրդային ինտելիգենցիայի շարքերում դեռ ևս կան վերջերս «Պրավդա» լրագրի կողմից մերկացված բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության թշնամի — ակադեմիկոս Լուզինի նման առանձին մարդիկ։

Բայց Լուզինները յեզակի յեն։ Իսկ ինտելիգենցիայի հիմնական ճնշող մասսան բանվոր դասակարգի հետ միասին գիտակցաբար մասնակցում ե սոցիալիզմի շինարարությանը։ Ինտելիգենցիան կապիտալիզմի օրով ըստ եյության բուրժուազիայի ծառան եր, գործակատարը և կապիտալի կարգած վերակացուն աշխատավորների վրա։ Այժմ խորհրդային ինտելիգենցիան աշխատավորների իրավահավասար, հարգված մի մասն ե, միասնական խորհրդային ժողովրդի մի մասը։

Աշխատավորների պատգամավորների խորհուրդներ — այս բնորոշումը ցույց ե տալիս պատմական նվաճում, այն ե՝ բանվոր

դասակարգի, գյուղացիության և ինտելի-
գենցիայի միջև յեղած արմատական տարբերության ջնջումը: Աճել և ամրացել է ամբողջական, միասնական խորհրդային ժողովուրդը: Հենց այդ է պատճառը, վոր բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան այժմ հանդես են գալիս իբրև աշխատավորներ: Իսկ բանվորական, գյուղացիական և կարմիր-բանակային պատգամավորների խորհուրդները դառնում են աշխատավորների պատգամավորների խորհուրդներ:

Մի քանի ընկերներ տարակուսանք են արտահայտում, թե ինչո՞ւ չի մեր պետությունը բանվորների և գյուղացիների պետություն հանդիսանում, իսկ խորհուրդները՝ աշխատավորների պատգամավորների խորհուրդներ:

«Բանվորների ու գյուղացիների պետություն» բնորոշումը ճիշտ և անհրաժեշտ է ամենից առաջ այն պատճառով, վոր ցույց է տալիս, թե այդ պետությունը կազմավորվել է բանվոր դասակարգի ու գյուղացիու-



թյան դաշինքի հետևանքով, դաշինք, վորն իր ամբողջ ուժը պահպանում է նաև տըվյալ էտապում, հանդիսանալով բանվոր դասակարգի դիկտատուրայի հիմքը, վորը մենք պետք է ամեն կերպ ամրապնդենք:

«Բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն» բնորոշումը լիակատար չափով բնութագրում է խորհրդային պետության սոցիալական բնույթը. լիակատար չափով, վորովհետև ինտելիգենցիան, վորն առանձին դասակարգ չի հանդիսանում, չի կարող լինել այն գործոնը, վորը բնութագրում է պետության դասակարգային էությունը: Խորհրդային իշխանության սոցիալական էությունը — այդ բանվոր դասակարգի ու գյուղացիության դասակարգային դաշինքն է պրոլետարիատի ղեկավարությամբ:

Հարցն այլ կերպ է դրվում, յերբ խոսքը վոչ թե խորհրդային պետության սոցիալական բնույթի մասին է, այլ պրոլետարիատի դիկտատուրայի հենց պետական ձևի

մասին—խորհուրդների մասին: Խորհուրդները միշտ էլ յեղել են իշխանության ամենամասսայական, ամենադեմոկրատական կազմակերպությունը, ԽՍՀՄ-ի ազգաբնակության ճնշող մեծամասնության օրգան: «Աշխատավորների պատգամավորների խորհուրդներ» — այս հասկացողությունն արտացոլում է խորհրդային պետական կառուցվածքի հետագա դեմոկրատացումը, կառուցվածք, որը յելնում է այն փաստից, թե դասակարգերի վոչնչացման մեջ մեզանում վճռական քայլեր արդեն արված են, որ մեր հասարակությունը բացառապես բաղկացած է միասնական խորհրդային հասարակության աշխատավորներից՝ բանվորներից, գյուղացիներից, ինտելիգենցիայից:

Աշխատավորների պատգամավորների խորհուրդները հանդիսանում են ամբողջ խորհրդային ժողովուրդը միավորող իշխանության օրգաններ:

Աշխատավորների պատգամավորների խոր-



հուրդներում Սահմանադրությունն ստեղծում է պետական մի ձև, վորն արտացոլում է բանվոր դասակարգի դիկտատուրայի զարգացման մի նոր էտապ — այն էտապը, վոր կապված է մեծ պատմական խընդիրների կենսագործման հետ՝ դասակարգային և այլ տարբերությունների մնացորդները վերջնականապես վերացնելու, գյուղի ու քաղաքի ներհակությունը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի տարբերությունը վոչընչացնելու, լիակատար կոմունիստական հասարակություն կառուցելու ասպարեզում:

## ԻՆՉՈ՞Ւ ՅԵ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԱՄԵՆ ԿԵՐՊ ԱՄՐԱՊՆԴԵԼ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՅԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Խորհրդային սոցիալիստական պետությունը հատուկ տիպի պետություն է: Պրոլետարական դիկտատուրան վոչ միայն բռնություն է բուրժուազիայի վրա, այլև բան-

*վոր դասակարգի ղեկավարության ամբողջ աշխատավոր մասսաների նկատմամբ սոցիալիստական հասարակության կառուցելու գործում։*

*«Պրոլետարիատի դիկտատուրան — ասում է* Լենինը *— եթե այդ լատիներեն, գիտական, պատմա-փիլիսոփայական արտահայտությունը թարգմանենք ավելի պարզ լեզվով, ահա թե ինչ է նշանակում՝*

*Միայն մի որոշ դասակարգ, այն է քաղաքային և առհասարակ ֆաբրիկա-գործարանային արդյունաբերական բանվորներն են ի վիճակի ղեկավարելու աշխատավորների ու շահագործվողների ամբողջ մասսան կապիտալի լուծը տապալելու համար մղվող պայքարում, հենց տապալման ընթացքում, հաղթանակը պահելու և ամրապնդելու համար մղված պայքարում, նոր սոցիալիստական հասարակարգ ստեղծելու գործում, դասակարգերի լիակատար վոչնչացման համար մղվող ամբողջ պայքարում»**)։

---

*) Լենին, *հատոր* XIV, *եջ* 336։



*Կուսակցության ղեկավարությամբ մեր յերկրի բանվոր դասակարգն աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած՝ հսկայական հաջողություններ է ձեռք բերել սոցիալիստական հասարակություն կառուցելու գործում։ Դասակարգային թշնամիների և նրանց ամեն տեսակի գործակալության դեմ մղած դաժան պայքարում բանվոր դասակարգը կուսակցության ղեկավարությամբ ինդուստրացրեց յերկիրը, սոցիալիստական ուղին փոխադրեց հարյուր միլիոնանոց գյուղացիությունը։ Այս հիման վրա վերացված են շահագործող դասակարգերը և վոչնչացված է արմատական տարբերությունը բանվորների ու գյուղացիների միջև։*

Բայց դեռ գոյություն ունեն դասակարգային տարբերությունների մնացորդներ բանվորների ու գյուղացիների միջև, դասակարգերի վոչնչացման պրոցեսը դեռ չի ավարտված, դասակարգերի վոչնչացման պրոցեսը դեռ շարունակվում է։ *Դեռ չի վերացված քաղաքի և գյուղի ներհակությունը։*

*Մեծ ստախանովյան շարժման հիման վրա մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև յեղած ներհակությունը վոչնչացնելու ասպարեզում կատարված են միայն առաջին քայլերը: Այս բոլոր պատմական խնդիրների լիակատար ավարտումը սոցիալիստական հասարակությունը ծավալուն կոմունիստական հասարակության վերափոխելու գործում* անհնարին է առանց բանվոր դասակարգի ղեկավար դերի հետագա պահպանման ու ամրապնդման, հետևաբար և առանց բանվոր դասակարգի դիկտատուրայի հետագա պահպանման ու ամրապնդման: Ահա թե ինչու խոսք անգամ չի կարող լինել բանվոր դասակարգի դիկտատուրան վերացնելու մասին, սոցիալիստական պետության մահացման մասին մինչև լիակատար կոմունիզմը:

*Բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության ստեղծումով մարդկության պատմության մեջ առաջին անգամն*



*է ստեղծվել մի պետություն, վորը հանդիսանում է իրոք* համաժողովրդական *պետություն: Մեր սոցիալիստական պետությունն իր շուրջն է համախմբում աշխատավորների բոլոր խավերն ու միջնախավերը, Խորհրդային Միության մեջ բնակվող առանձին ազգությունների ամբողջ բազմազանությունը, ամբողջ խորհրդային ժողովուրդը, վորը բաղկացած է աշխատավորներից— բանվորներից, գյուղացիներից ու ինտելիգենցիայից, վորոնց միջև յեղած սահմանները ջնջվում են:*

*Մարքսի — Էնգելսի — Լենինի — Ստալինի ուսմունքը ցույց տվեց բուրժուական պետության* իսկական դերն իբրև կապիտալիստների դասակարգի գործադիր կոմիտեի:

*Կապիտալիստական պետությունը սրբորեն պահպանում է կապիտալիստների մասնավոր սեփականությունը: Սոցիալիստական պետությունը հենվում է սոցիալիստական սեփականության վրա, վորը հասարակա-*

*կան հարստություն, սոցիալիստական հայրենիքի բոլոր քաղաքացիների ունևորության ու կուլտուրականության աղբյուրն է:*

Մեզ անհրաժեշտ է հզոր և ուժեղ սոցիալիստական պետություն, վորպեսզի վոչնչացնենք կապիտալիզմի մնացորդները էկոնոմիկայի և մարդկանց գիտակցության մեջ, վորպեսզի վերադաստիարակենք միլիոնավոր մարդկանց, վորպեսզի մասսաների գիտակցությունից արմատախիլ անենք հին կապիտալիստական հասարակության սովորությունները ու տրադիցիաները, վորպեսզի դուրս քաշենք սոցիալիստական մարմնի վրա յեղած կապիտալիզմի «բնածին արատները», մինչև վերջը հասցնենք դասակարգերի և բոլոր դասակարգային տարբերությունների լիկվիդացիան, քաղաքի և գյուղի միջև, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև յեղած ներհակությունների լիկվիդացիան:

***Մեզ մոտ դեռ չեն չքացել դասակարգային թշնամիների բեկորները, մնացորդները,***



***իրենց դասակարգային բնույթով մեզ թշնամի տարրերը, որոնց անխնա ճնշումը մնում է սոցիալիզմի պետության սրբազան պարտականությունը:*** *«Չի կարելի նմանապես մոռանալ, որ մանր բուրժուական տարերքը կենսունակ է, որ նույնիսկ աշխատավոր գյուղացի-կոլտնտեսականների միջև, մեր պետապարատի ծառայողների մասսայի միջև, իսկ լերբեմն էլ բանվորների միջև, այդ տարերքը հեշտությամբ իրենց արտահայտիչներն են գտնում մերթ ամենատեսակ սրիկուլյանտների ձևով, մերթ իբրև կոլտնտեսական ու պետական բարիքի գողերի ձևով, մերթ հակախորհրդային բամբասախոսների ձևով և այլն*)*:

*Սահմանադրությունը 12-րդ հոդվածում հռչակում է «ԽՍՀՄ-ում աշխատանքը յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն է՝ «ով չի աշխատում նա*

*) Մոլոտով, *Դյանն ու մեր խնդիրները, (Զեկուցում ԽՍՀՄ-ի ԿԳԿ-ի 2-րդ նստաշրջանում), էջ* 23:

չի ուտում» սկզբունքով: ԽՍՀՄ-ում իրականացվում է սոցիալիզմի «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի» սկզբունքը»: Սոցիալիստական պետությունն իր ամբողջ ուժով, իր հեղինակությամբ, իր ապարատով, ազդեցության միջոցներով ապահովում է այդ սկզբունքների լրակատար կենսագործումը: Երբ սոցիալիստական հասարակությունն այնքան կզարգացնի իր արտադրողական ուժերը, որ հասարակական հարստության բոլոր աղբյուրները լայն գետի պես կհոսեն և իր դրոշների վրա կգրի «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ պահանջմունքների», այն ժամանակ պետությունը կարող է լիովին մահանալ: Ավելի ճիշտ, — ինչպես ասում էր Լենինը՝ — «պետության լրակատար մահացման համար հարկավոր է լրակատար կոմունիզմ»*):

*) Լենին, հատոր XXI, էջ 435:



Իսկ քանի դեռ գործում է «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի» սկզբունքը, պետության անհրաժեշտությունը մնում է, պետություն, որը պետք է պահպանի պրոդուկտների բաշխումն ըստ աշխատանքի, որը պետք է պահպանի հասարակական հարստության աղբյուր և բազա հանդիսացող հասարակական սոցիալիստական սեփականությունը, որը պետք է պահպանի քաղաքացիների՝ աշխատանքի հետևանքով ձեռք բերված անձնական գույքը:

Մեզ պետությունն անհրաժեշտ է, որպեսզի դաստիարակենք և ամրացնենք նոր հասարակական սոցիալիստական կարգապահությունը, պարտքի զգացումը, ազնիվ վերաբերմունք դեպի աշխատանքը:

Քանի դեռ չի անհետացել թշնամիների հարձակման վտանգը մեր երկրի դեմ դրսից, մեզ անհրաժեշտ է սոցիալիստական պետություն, պրոլետարական դիկտատուրայի պետության ամուր կազմակերպու-

թյուն, որը պահակ կանգնած լինի մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության և սահմանների անձեռնմխելիության:

Մենք պետության մահացման կողմնակից ենք, սակայն մենք պետք է հիշենք, որ պետությունն իբրև քաղաքական իշխանության կազմակերպություն պահպանվում է լիակատար կոմունիզմին անցնելու ամբողջ ժամանակաշրջանում: Լիակատար կոմունիզմի համար անհրաժեշտ բոլոր պայմանները ստեղծելու նպատակով մղվող պայքարը կարող է իրագործվել միայն այն ժամանակ, երբ կապահովվի բանվոր դասակարգի ղեկավարությունը բոլոր աշխատավորների նկատմամբ, երբ կպահպանվի ա՛յն բանվոր դասակարգի դիկտատուրան, որն իրենից ներկայացնում է ամենից ավելի քաղաքականապես զարգացած մի ուժ, որն անցել է կազմակերպման ու համախմբման դպրոց խոշոր արդյունաբերության մեջ և



կռվել է հեղափոխական պայքարի մեջ ընդդեմ կապիտալիզմի:

Ամեն մի խորհրդային քաղաքացու սրբազան պարտականությունն է պրոլետարական դիկտատուրայի պետության, սոցիալիզմի պետության ամրապնդումը, ուժեղացումը: Պետք է լավ հիշել ընկեր Ստալինի խոսքերը՝ «Մենք պետության մահացման կողմնակից ենք: Եվ մենք միաժամանակ կողմնակից ենք, որ ուժեղացվի պրոլետարիատի դիկտատուրան, որը մինչև այժմ գոյություն ունեցող պետական իշխանությունների մեջ ամենահուժկու և ամենահզոր իշխանությունն է: Պետական իշխանության բարձրագույն զարգացում՝ պետական իշխանության մահացման համար պայմաններ պատրաստելու նպատակով, — ահա մարքսիստական ֆորմուլան: Սա «հակասակա՞ն» է: Այո՛, «հակասական» է: Բայց այս հակասությունը կենսական է և նա ամբողջո-

վին արտացոլում է մարքսյան դիալեկտիկան»*) :

Դասակարգային թշնամիների դեմ մղած համառ ու դաժան կռվում կուսակցությունը մեծ Ստալինի ղեկավարությամբ վճռական հաջողություններ ձեռք բերեց դասակարգերի վոչնչացման գործում: Մեր կուսակցությունը մերկացրեց ու ջախջախեց տրոցկիստական — զինովյևյան հակահեղափոխական բանդան, վորը կանգ չեր առնում վոչ մի զազրելի բանի առաջ, հանուն կապիտալիզմի ռեստավրացիայի ՍՍՀՄ-ում: Հակահեղափոխության իրենց այդ ծրագրի՝ սոցիալիզմի ջախջախելու և կապիտալիզմը վերականգնելու ծրագրի համար մղած պայքարում, տրոցկիստական — զինովյևյան վոհմակի բանդիտները վոչնչից չեն զզվում, դաշինք կնքելով Գեստապոյի հետ և մահա-

*) Ստալին, Լենինիզմի հարցեր, եջ 531:



փորձեր կազմակերպելով կուսակցության և ժողովրդի առաջնորդների դեմ:

Կուսակցական շարքերի հետագա համախմբումը, բանվոր դասակարգի դիկտատուրայի և բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության հետագա ամրապնդումը կապահովեն դասակարգերի ու դասակարգային տարբերությունների վերջնական վոչնչացումը, լիակատար կոմունիստական հասարակության կառուցումը:

